ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ (ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԳԻՏԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
Երևան № 1 1941 թ.

ԱՇ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
(Պատմական գիտ. թեկնածու)

# ՆԱԽԱՄԵՍՐՈՊՅԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԸ

## (ԹԵԶԵՐ)

1. Հեթանոսական հայկական գրականության, ավելի ճիշտ՝ նախամեսրոպյան հայկական գրականության հարցը—հայ ժողովրդի պատմության կարևոր և ակտուալ հարցերից մեկն է։ Դա, ըստ էության, հեթանոսական շրջանի հայկական գրավոր կուլտուրայի գոյության-չգոյության և 5-րդ դարի մի շարք հայ մատենագիրների ու թարգմանությունների հարազատության-անհարազատության հարցն է։ Եթե նախամեսրոպյան շրջանում չի եղել հայերեն գրականություն, ապա ուրեմն՝ հեթանոսական Հայաստանում չի եղել և հայկական գրավոր կուլտուրա։ Այն բանասերների կարծիքը, որ հեթանոսական Հայաստանում գոյություն է ունեցել բանահյուսություն, իսկ բանահյուսությունը՝ գրականություն է, չի կարելի ընդունել։ Այն, ինչ դեռ գրի չի առնված, նա գրականություն համարվել չի կարող։

Նախամեսրոպյան հայ գրականության հարցի լուսաբանումը կարևոր է և այն տեսակետից, որ հայ մատենագրության կուրս կազմելու կապակցությամբ հայագիտության առաջնակարգ հարցերից մեկն է պարզել Մաշտոցի տեղն ու դերը հայ գրի ու գրականության պատմության մեջ։ Սակայն այդ հարցը հնարավոր է պարզել այն ժամանակ, երբ կպարզաբանվի նախամեսրոպյան հայ գրի ու գրականության առեղծվածը։ Վերջինիս ճիշտ լուծումից է կախված նաև Մեսրոպի դերի ճիշտ գնահատականն ընդհանրապես հայ գրականության պատմության մեջ։

2. Նախամեսրոպյան հայ գրականության հարցում հայ ժողովրդի պատմությանը և գրականությանը վերաբերող մի շարք աշխատություններում գերիշխող է հանդիսացել հետևյալ տրադիցիոն տեսակետը.— հայերը, ինչպես և նրա հարևան վրացի և աղվան ժողովուրդները, մինչև 5-րդ դարը չեն ունեցել իրենց սեփական գիրն ու գրականությունը։ Մինչև այդ շրջանը գրել են հունարեն, ասորերեն կամ պահլավ-պարսկերեն։ 5-րդ դարի առաջին տասնամյակում Մաշտոցը հայոց Վռամշապուհ թագավորի համաձայնությամբ և Սահակ Պարթևի օժանդակությամբ ձեռնամուխ է եղել հայերեն գրի ստեղծմանը և իրականացրել է այն։ Այնուհետև Մաշտոցն անցել է Վրաստան—վրաց գիրն է ստեղծել, անցել է Աղվանից աշխարհը—աղվանից գիրն է ստեղծել և այսպես սկիզբ դրել Անդրկովկասի ժողովուրդների գրին ու գրականությանը։

3. Մեսրոպյան գրերից առաջ հայերեն նշանագիր գոյություն ունենալու մասին մենք հիշատակություն ունենք դեռ ևս Շիրակացու [1]), իսկ հետագայում նաև Ասողիկի մոտ։ Սակայն առաջին հայ հեղինակը, որ դուրս է եկել տրադիցիոն տեսակետի դեմ—13-րդ դարի պատմիչ Վարդան Մեծն է։ Նա, հակառակ իր ժամանակ ընդհանրություն գտած վերև հիշված տեսակետի, պնդում է, որ հայերը նախաքրիստոնեական շրջանում ունեցել են իրենց սեփական գիրն ու գրականությունը։ Նա թվում է մինչև անգամ հնում գործածված գրերի թիվը, որոնք պահվելիս են եղել Դանիելի մոտ։

«...գրութիւն հայերէն քսան և երկու գիր առ Դանիէլի Ասորւոյ գտեալ ի հին

[1]) Հմմտ. «Անանուն ժամանակագրութիւն, խմբագր. յօրինեալ յէ դարու», Վենետիկ 1904, էջ 57։

ժամանակաց, որ վասն ոչ պարգևելոյ զընդարձակութիւն լեզուիս՝ անհոգացեալ եղև յառաջնոցն..»[1]) Որպես փաստական ապացույց նա հիշում է Լևոն Թագավորի ժամանակ Կիլիկիայում գտնված հեթանոս հայ թագավորների դրամների փաստը. «Եւ զի յայտ է հայերէն գիր հնոյն՝ վկայեցաւ ի ժամանակս Լևոնի արքայի, զի գտաւ դրամ ի Կիլիկիոյ, հայերէն գրով դրոշմեալ զանուն կռապաշտ թագաւորացն Հայկազանց»[2]).

Տրադիցիոն տեսակետի դեմ է արտահայտվել առաջին անգամ բանասեր Ղ. Ինճիճյանը: Նա, բազմաթիվ մեջբերումներ անելով սկզբնաղբյուրներից հօգուտ նախամեսրոպյան հայ գրի ու գրականության գոյության, համոզված պնդում է, որ Դանիելի մոտ եղած գրերը—հին հայկական գրերն էին և նրանք էին, որ Մեսրոպի այբուբենի հիմքը կազմեցին. «Եւ այսպէս, ըստ մերոց նախայիշեալ պատմագրաց—ամփոփում է նա իր բերած պատմական փաստերը—հայկական գիրք էին, որք գտան առ Դանիէլի, և Դանիէլեան նշանագիրք էին, զորս լուացոյց Մեսրոպ»[3]).

Նախամեսրոպյան հայ գրերի գոյության հարցը վճռականորեն դրել է Մ. Էմինը: Նա գտնում է, որ Դանիելյան գրերը Հայաստանում գործածական գրեր էին և նրանց դուրս մղեցին հունարեն, զնդերեն և ասորերեն գրերը՝ զուտ քաղաքական նպատակով[4]).

Պրոֆ. Ք. Պատկանյանը Մաշտոցին համարում է հայկական այբուբենի ոչ թե ստեղծողը, այլ կատարելագործողը. «...Ճիշտ է այն կարծիքը-գրում է նա,—որի համեմատ Մեսրոպը ոչ թե գտավ հայոց այբուբենը, այլ արդեն եղած, բայց ընդհանուրից չօգտագործված Դանիելյան հայկական այբուբենը կատարելագործեց»[5]).

Նման վճռական եզրակացությունների են հանգել նաև Եվրոպայի մի շարք հայագետ գիտնականներ (Հյուբշմանը. Պետերմանը, ակադ. Բրոսսեն և ուրիշները): Այսպես, Պետերմանը նախամեսրոպյան նշանագրերի մասին հետևյալն է գրում. «Հայոց տառերի գյուտը վերագրում են Մեսրոպին, սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նա ոչ թե ամբողջ այբուբենն է գծել կամ կազմել, այլ մի հին, վաղուց մոռացված այբուբենն է վերականգնել, կատարելագործել և տարածել ամբողջ երկրում»:

Ակադեմիկ Բրոսսեն լիովին համաձայն է մատենագրական այն տեղեկությանը, թե Մաշտոցն օգտագործել է 22 տառ Դանիելից և պնդում է, որ «Հայոց հին այբուբենը բաղկացած էր 22 տառից, որի վրա Մեսրոպը ավելացրեց 14 տառ, այդպիսով կազմեց նոր այբուբենը ըստ հունական շարահարության»[6]).

Նախամեսրոպյան գրի գոյության օգտին են արտահայտվել Լեոն և Գարագաշյանը: Վերջինս իր «Քննական պատմութիւն Հայոց» աշխատության մեջ գրում է. «...չէ ճիշտ այն, որ ընդհանրապես կկարծուի, թէ Հայք յառաջ քան զՄեսրոպ չունէին նշանագիր, ուստի էին անմասն դպրութենէ»[7]).

Նախամեսրոպյան գրի հարցը համոզված դրել է Ի. Հարությունյանն իր «Հայոց գիրը» աշխատության մեջ, որը 1888 թ. արժանացել է Սահակ-Մեսրոպյան մրցանակաբաշխության առաջին մրցանակին: Նա պնդում է, որ հայերն ունեին բնիկ հայ գիր և այդ գիրը «ամուր կերպով շղթայված էր կռապաշտության հետ»: Հույն և ասորի կրոնավորները՝ գալով Հայաստան, հալածեցին այն՝ ներմուծելով հունական և ասորական գիրը: Բայց օտար քարոզիչները չբավականանալով սրանով՝ սկսեցին ջնջել նաև հայերեն լեզուն: Հայերը տեսնելով իրենց կործանելի վիճակը՝ մտածեցին դուրս գալ այս դրությունից և հնարեցին այն գիրը, որի հեղինակն է համարվում Մաշտոցը[8]).

Եվ, վերջապես, հօգուտ նախամեսրոպյան հայ գրականության գոյության է

---

1) Վարդան Մեծ, Պատմութիւն տիեզերական, էջ 50:

2) Նույնը, էջ 50:

3) Ղ. Ինճիճյան, Հնախոսություն, III հատոր, էջ 76:

4) М. Эмин, Исследования, Москва 1896 г. стр. 207, 211, 221.

5) Проф. Патканов, История Каганкатваци. Примечания, стр. 346.

6) Brosset, Deux Historiens Armeniens Kirakos de Ganzac, 13-րդ ծանոթագրություն:

7) Ա. Մ. Գարագաշյան, Քնն. պատմ. Հայոց, գ., էջ 39.

8) Ի. Հարությունյան, Հայոց գիրը, Թիֆլիս 1892: էջ 153-157:

արտահայտվել հայագիտության մեջ մեծ հեղինակություն վայելող գիտնականներից մեկը—ակադեմիկ. Ն. Յ. Մառը։ Նա իր նշանավոր «Ани» աշխատության առաջաբանում հետևյալն է գրում. «Ողջ Կովկասը, ներառյալ նաև Հայաստանը, կուլտուրական են եղել դեռևս սասանո-պարթևական քաղաքակրթության էպոխայում։ Հայաստանում մայրենի լեզվով գրականության գոյությունն ունեցել մեր թվագրությունից դեռևս մի քանի դար առաջ»[1]։

4. Նախամեսրոպյան հայկական գրականության ուսումնասիրության հարցում, նրա գոյության դեմ արտահայտվող ուսումնասիրողների մոտ, նկատվում է պատմական փաստերի մեկնաբանման հետևյալ շփոթն ու սխալ մոտեցումը։

ա) Հարցի որոշում ոչ թե գիտական մի շարք դիսցիպլինաներով ամբողջությամբ առած, այլ պատմիչների հաղորդած տեղեկություններով։ Այդ ուսումնասիրողները երկրորդական արժեք են տալիս լեզվական, պալեոգրաֆիկ և արխեոլոգիական այլ դիսցիպլինաների տվյալներին, որոնք վերջին հաշվով օգնում են հիմնական հարցը լուծելուն։

բ) Անքննադատ մոտեցում դեպի հայերեն սկզբնաղբյուրները.—եթե Կորյունի կամ Ղազարի տպագիր տեքստում այնպես է տված, ուրեմն պատմական իրողությունն այլ կերպ լինել չի կարող։ Նրանք մոռանում են, որ հեթանոսական կուլտուրան աշխատել են շուռ տված երեսով ներկայացնել հենց իրենք, հնագույն քրիստոնյա պատմիչները, որոնց թվում և հայ պատմիչները։ Նրանք ճիշտ չեն հասկանում պատմիչների տենդենցը, որոնք ամեն կերպ աշխատում են ցույց տալ, որ Հայաստանի հեթանոսական շրջանը զուտ բարբարոսական մի շրջան է։

գ) Շփոթել են իրար հետ հայկական գիր ու հայկական գրականության հասկացողությունները՝ հարցի հիմնական առանցքը դարձնելով Դանիելյան գրերը։ Հարցի նման դրվածքն ընդհանրապես ճիշտ չէ, որովհետև մի ժողովուրդ կարող է զարգացած գրականություն ստեղծել անկախ նրանից, թե այդ ժողովուրդը գիր ունի թե ոչ։ Փաստ է, որ Արևելքում մի շարք ժողովուրդներ ստեղծեցին իրենց գիրն ու գրականությունն արաբերենով։ Ինչ վերաբերվում է Դանիելյան գրի գոյության ունենալ-չունենալու հարցին, ապա նրա դրական կամ բացասական լուծումը չի կարող հայկական հեթանոսական գրականության գոյության հարցի որոշիչը լինել, որովհետև հայկական գրականությունը կարող էր գրվել և զարգանալ նաև այլ նշանագրերով։

5. Նպատակ չունենալով հայ գրի ու գրականության հարցում սկզբնաղբյուրներում նկատվող անախրոնիզմների վրա կանգ առնել, բայց ցույց տալու համար՝ թե որքան անհրաժեշտ է նրանց ուշադիր օգտագործումը, մենք անհրաժեշտ ենք համարում կանգ առնել միայն մի փաստի վրա—հայկական գրերի ատաղձի վրա։

Սկզբնաղբյուրները գրերի «գյուտը» ներկայացնում են այն ձևով, որ իբր նրանում մասնակցություն են ունեցել չորս ձեռք. ա) Դանիելը, որն իր մոտ եղած գրերն ուղարկել է Վռամշապուհին, որով և երկու տարի աշակերտներ են սովորեցրել, բ) Մաշտոցը, որը հիմնական ստեղծողն է հանդիսացել, գ) Հռոփանոսը, որը ձևավորել է գրերը Սամոսատում և դ) հրաշքը, որի մասին պատմում է Խորենացին. «Եւ տեսանէ (Մեսրոպ) ոչ ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով ի վերայ վիմի. զի որպէս ի ձեան վերջք գծին՝ կուտեալ ունէր քարն...» (Խոր. Պատմ. էջ 327)։

Մի կողմ թողնելով աստվածային թաթի օգնությամբ գրվելու առասպելը, հայկական նշանագրերի պալեոգրաֆիկ ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ոչ թե երեք անձնավորություն գրել ու լրացրել են հայերեն այբուբենը, այլ մեկն ուղղակի գրել է իր առջև հունարեն այբուբենը, հայ-

---

[1] Н. Я. Марр, Ани. 1934, стр. 5.

Ն. Ե. Մառի այս կարծիքը ոմանք հասկանում են այն ձևով, որ իբր այստեղ խոսքը «էծագրեր»-ին է վերաբերում (!)։ Այդպիսի պնդումը, մեր կարծիքով, ռուսերեն տեքստը ճիշտ չհասկանալու պատճառով է։ Այստեղ խոսքը՝ շատ պարզ «մայրենի լեզվի» մասին է։ Ի միջի այլոց, նույն կարծիքը Մառը հայտնել է նաև իր Գրաբարի քերականության առաջաբանում։

կական տառերը ձևել նրա վրա՝ և տառերենից վերցնելով լրացուցիչ երեք տառ, կազմել է հայկական այբուբենը։ Ահա համեմատական աղյուսակը։—

| Հունարեն 5-րդ դարի տառերն՝ այբուբենական կարգով | | Հայերեն հնագույն երկաթագիրը | |
|---|---|---|---|
| α | Alpha | Ա | այբ (կարել է ներքևից) |
| Б | Beta | Բ | բեն (կարել է աջի վերևից փոքրիկ գիծ) |
| Γ | Gamma | Գ | գիմ (կլոր օղ է ավելացրել) |
| Δ | Delta | Դ | դա (հետևել է «Դ»-ի օրինակին) |
| Ɛ | Epsilon | Ե | եչ (խոր ընկած մասը բաց է արել) |
| Ζ | Zeta | Զ | զա (վերևից միացրել է գծիկով) |
| Η (Ⱶ) | Eta | Է | է (վերցրել է տառի առաջին կեսը) |
| Η (Ⱶ) | —„— | Ը | ըթ (վերցրել է «Է»-ի կեսը) |
| Θ | Theta | Թ | թո (գրեթե նույնությամբ) |
| Θ | —„— | Ժ | ժե («Թ»-ի երկրորդ թեն է վերցրել) |
| Ι | Jota | Ի | ինի (ավելացրել է փոքրիկ եղուն) |
| ᐃ | սասանյան | Լ | լյուն (սասանյան «լ»-ն շուռ է տվել) |
| ω | | Խ | խե (սասանյան «խ» ոտքի վրա է դրել) |
| ɔ | | Ծ | ծա (գրեթե նույնությամբ) |
| Κ (Ⱪ) | Kappa | Կ | կեն (վերցրել է մի մասը ձախից և աջից, թեք ձևով) |
| Κ (Ⱪ) | —„— | Հ | հո (2-րդ կեսն է վերցրել) |
| Κ (Ⱪ) | —„— | Ձ | ձա (Հ-ի վերի կողմը ծռել է ձախ) |
| Λ | Lamlda | Ղ | ղատ (պոչ է կպցրել) |
| Λ | —„— | Ճ | ճե (ներքևից միացրել է) |
| Μ | Mii | Մ | մեն (առաջին գիծը վերջինի մի մասը կարել է) |
| Μ | —„— | Յ | յի (նմանեցրել է) |
| Ν | Nii | Ն | նու (նմանեցրել է) |
| Ξ | Ksi | Շ | շա (գրեթե նույնությամբ) |
| Ο | Omikron | Ո | ո (ներքևից կարել է) |
| Ο | —„— | Չ | չա (ներքևից թեք գիծ է ավելացրել) |
| Π | Pi | Պ | պե (գրեթե նույնությամբ) |
| ϙ | (90-ի նշանգիր) | Ջ | ջե (ներքևից թեք գծով է միացրել) |
| ρ | Rho | Ռ | ռա (կրկնակի ր+ր) |
| C | sigme | Ս | սե (նմանեցրել է) |
| Υ | (90-ի նշանը) | Վ | վե (քիչ փոփոխությամբ) |
| Υ | Tau | Տ | տյուն (վերևի ձախ եղունը ջնջել է) |
| Ρ | | Ր | րե (քիչ փոփոխությամբ) |
| ω | | Ց | ցո (նմանեցրել է) |
| Υ | Upsilon | Ւ | վյուն (քիչ փոփոխությունով) |
| Φ | Phi | Փ | փյուր (քիչ փոփոխությունով) |
| Χ | Chi | Ք | քե (քիչ փոփոխությունով) |

Համեմատությունից պարզ երևում է, որ հայերեն այբուբենը ձևած է հունարենի վրա։ Ըստ որում, հունարենի վրա հայերեն տառերը ձևող հեղինակն ամուր սկզբունք է ունեցել ոչ մի տառ չվերցնել նույնությամբ։ Չի խախտել նա հունարենի այբուբենական կարգը։ Միայն այն նոր տառերը, որոնք մտցվում են հայերեն լեզվի առանձնահատկության հիման վրա՝ դրել է ընդօրինակած տառի մոտ։

Բոլորովին անհիմն է այն աղբյուրագետների կարծիքը, որոնք ժխտում են հայերեն այբուբենի հունարենի հիման վրա ձևած լինելու փաստը։

Պալեոգրաֆիկ այս փոքրիկ ապացույցը բավական է ասելու համար, որ չի կարելի տառացի հասկանալ պատմիչների տեղեկությունները։ Անհրաժեշտ է ավելի լայն մոտենալ խնդրին և քննել այն։

6. Հայկական մատենագրության և հայկական գրերի հետ սերտ կապված հարց է «Նշանագիր իմաստնոց»-ի հարցը։ Հայկական պատմագրական բովանդակություն ունեցող ձեռագրերում, հատկապես բառարանային և քերականական բովանդակություն ունեցող ձեռագրերում, ինչպես հայտնի է, հաճախ պատահում են սղագրության ամբողջ ցուցակներ, որոնք խնամքով կազմած ու շարադրված են ըստ հայկական այբուբենի։ Նրանք կոչվում են սովորաբար «Նշանագիր իմաստնոց»։

Այսպիսի նշանագրեր են պարունակում ՀՍՍՌ Մատենադարանի մի շարք ձեռագրեր՝ № 342 (373), թերթ 105բ, № 2618, թերթ 253ա—255բ, № 750, էջ 128, № 487, թերթ 166բ, № 123, թերթ 432, № 266, թերթ 93ա, № 2331, թերթ 78բ, 2381, թերթ 85ա և այլն[1]։

«Նշանագիր իմաստնոց»-ի նշանագրերի հիմնական մասը գաղափարագրեր են (հիերոգլիֆներ)։ Այդ գաղափարագրերի մի մասը համապատասխանում են իրենց նկարին։ Այդ նշանագրերից կարելի է բերել մի քանի օրինակներ։—

աթոռ
լուսին
միջնորդ
եղջյուր
թագավոր
խաչ
հրեշտակ
կշեռք
աղբյուր
աստիճան
լեզու
եկեղեցի
տապանակ
տուն
փառասեր
քաղաք
վիշապ
սպասաւոր
սեղան
սահման
կոնք
նշխար
շուշան
պատավան-դան
պտուղ
սեր

սիրտ
բանական
գարուն
բուրաստան
արուեստ
ահավոր
աշտանակ
արծաթասեր
ձմեռ
ձուկ
ճակատ
ճանապարհ
մատանի
մարդ
մեղր
հափշտակիչ
հեթանոս
կռապաշտ
կեղծավոր
երաժշտութ.
գիրք
գավազան

1) «Նշանագիր իմաստնոց»-ի որոշ ցուցակներ արդեն հրատարակված են Եդյանի և ուրիշների կողմից (տես Signes hiéroglyphiques dans les manuscrits arméniens; Congrès intern. des Orientalistes, 1873, էջ 456, Սրուանձտեանց Թորոս աղբարի տաճկին հատարում (տպ. 1879, էջ 337—340)։ Համեմատաբար, լիակատար հրատ. Տրդատ Վ. Պալյանը «Նշանագիրք հայոց» վերնագրով. Վիեննա 1898 թ. էջ 13—18., Բասհակ Վ. Սրապյանը «Հանդէս Ամսօրեայ»-ում (1902 թ., էջ 201—202), Յրեներից Մուրատը «Հանդէս ամսօրեայ»-ում (1903, էջ 144—146, 333—339)։ Ամենից լրիվ ցուցակը հրատարակել է պրոֆ. Հ. Աճառյանը «Հանդէս ամսօրեայ»-ում։

※ աստղ

☾ առավոտ

ապստամբ

«Նշանագիր իմաստնոց»-ում կան այնպիսի նշանագրեր, որոնք փաստորեն հայերեն տվյալ բառի համառոտագրություններն են հանդիսանում։ Այդ բառերի մեծ մասը համառոտված է բառի որոշ տառերում։

շրտ—աշակերտ

աք—առաջք

աքլ—առաքել

եկղ—եկեղեցի

մգ—մատանգ

ճ—ճառագայթ

մմ—միւսանգամ

քր—Քերովբե

օձ—օձ

—օհ—օրհնել

—հյ—հայրապետ

Բանասիրության մեջ այն կարծիքն է գերիշխել, որ «Նշանագիր իմաստնոց»-ի հնությունը XIV դարից առաջ չէ։

ՀՍՍՌ Պետ. Մատենադարանի մի ունիկում ձեռագիր (№ 2317), որը պահել է «Նշանագիր իմաստնոցը», հիմք է տալիս հակառակ ենթադրության անելու։ Պարզվում է, որ «Նշանագիր իմաստնոց»-ը շատ հնուց է գալիս։ Մեր վերև հիշված ձեռագիրն ընդօրինակված է 1357 թ. Խրիմի Սուրխաթ քաղաքում։ Նա ունի հետևյալ հիշատակարանը.

«...Աստանաւր յանգ եկեալ կատարեցաւ տառս այս իմաստապատում, որ կոչի քերականն. արարեալ և մեկնեալ զսա մեծ վարդապետին Հայոց Վարդանայ Կիլիկեցւոյ՝ ի խնդրոյ բարեպաշտ թագաւորին Հեթմոյ։ Նաև խրատք Գէորգեայ վարդապետի և անհաս գրչին Առիստակիսի մեծ հռետորի ի թուին Հայոց ՊՁ, ձեռամբ Ստեփաննոսի մեղապարտի և յետին գրչի, ի խնդրոյ սրբամաքուր և ընթերցասէր քահանային Կարապետին ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ։ Վասն զի սա է քանոն և զարդարիչ ամենայն արհեստից, եւ առաւել որք փութան ձեռնարկել արհեստ գրչութեան։ Զի որպէս անհնար է թռչնոց ի յուծ լծել և ակօսս պատառել, և կամ եզանց յաւդս վերանալ, նոյնպէս առանց աշխատելոյ ի սմա՝ ոչ ոք կարէ հասու լինել արուեստին մեծի գրչութեան. և որ յանդգնի համարձակել՝ ոչ կարէ գրել պճնարինն, այլ եղծանէ զգրուածն, և ապականէ զգիրն ըստ անիմաստ խոհականքի, այսինքն մատղորդի, որ ոչ գիտէ զորոշումն յաւդուածոյն, այլ անհմտաբար հանէ զանդամ այն միս ի միւս անդամն, և զմիւսոյն ի միւս և այլն։

Բայց են ոմանք, որ ծաղր առնեն զգիրս զայս, որպէս և է մեր ազգիս հպարտութիւն և բռնաւորութիւն։ Զի որպէս մարգարիտ ի քիթս խոզի և մանեակ ոսկի ի պարանոց իշոյ, այնպէս և սա ի ձեռն անիմաստ և անմիտ առնն։ Այլ որ աքքի ի սիրոյ սորին, նա միայն գիտէ զճաշակ քաղցրութեան զորա։ Բայց գրեցաւ սա յաշխարհիս Հոնաց և ի երկիր Խրիմի ի հոյակապ և հռչակաւոր քաղաքիս, որ կոչի Սուրխաթ, ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս, ի հայրապետութեանն Հայոց տեառն Մխիթարայ, և եպիսկոպոսութեանն տէր Ստեփաննոսի աւրհնեալ քահանայապետի ամենայն հիւսիսական կողմանց...»։

Ձեռագիրն ունի հետևյալ բովանդակությունը.—

1ա—4բ «Մեկնութիւն բառից քերականին»։

5ա—5բ Վարդանի քերականության գլխացանկը։

6ա—70ա «Յաղագս մեկնութեան քերականին, զոր արարեալ է մեծ Վարդանայ ի խնդրոյ թագաւորին Հայոց Հեթմոյ»։

70ա—71բ «Յառաջանութիւնն պատանեկս, որ գալ»։

72ա—73բ «Մովսէսի Խորենացւոյ բան իմաստութեան»։

73ա—75բ «Նշանագիր»։

77ա— մինչև վերջ—«Վերլուծութիւնք բացերևակէս բազմազան բանից և բառից յոքնախումբ շարադրութեամբ արարեալ զատ Արիստոտէլս գրչի ի խընդրոյ բազմաց յարուեստ գրչութեան»։

Այս ձեռագրի «Նշանագիր իմաստնոյն» ունի 319 նշանագիր։ Նշանագրերը դասավորված են անվանական կարգով։ Ուշադրության արժանի է, որ «Նշանագիր իմաստնոյ»-ի այս տեքստը շարադրված է Խորենացու «Բան իմաստության»-ից հետո, որի տեքստը պարունակում է ընթերցանության հին ձևեր, «այլ»-ը «այդ» ձևով, «միջոց եղև երկոցունց ոչ լոտ բնութեան, այդ լոտ պատահման», «ոչ կատարել իմաստութեամբ, այդ արտաքին որոշութեամբ, «այդ սա է լոյս...» և այլն)։ «Նշանագիր իմաստնոյ»-ի այս տեքստի Մովսեսին վերագրվող քերականության օրգանական մաս լինելու մասին դժվար է ասել, բայց մի բան անկասկած է, որ Ստեփանոս գրչի «Նշանագր»-ի այսպիսի կապակցությամբ հանդես գալը, անկասկած, վկայում է նրա հնության մասին։

Մեզ թվում է, որ «Նշանագիր իմաստնոյ»-ը հին հայկական գիր համարելը գիտական փաստերով չի հիմնավորված, բայց որպես սղագրության՝ այնքան հին է, որքան հին է ինքը հայկական գրչությունը։ Չէր կարող պատահել, որ Հռոմում և Բյուզանդիոնում կրթություն ստացած հայ աշակերտները նրանց օրինակով չստեղծեին հայերեն սեփական սղագրություն, մանավանդ եթե ի նկատի ունենանք, որ հայ ձեռնագրերը ծանոթ են սղագրության հետ։ Այսպես, Փավստոս Բյուզանդը՝ խոսելով Ներսեսի՝ Վաղես կայսրին արած հանդիմանության մասին, գրում է. «Եւ գրէին զայս սեմիարք նոտարացն արքային, որք կային առաջի թագաւորին» (Փաւստոս, Դ. Ե)։ Սեմիարք նոտարացը, ինչպես ճիշտ նկատել է պրոֆ. Հ. Աճառյանը, դա σημεία ἐν μίκροῖς-ըն stenographie (սղագրություն-ն է)։

7. Հայաստանի նախարնիկները, խալդերը, ունեցել են իրենց սեփական սեպագիր գրությունը, որոնցից մեզ հասել են բազմաթիվ նմուշներ։ Նորագույն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հայերը ոչ թե եկվոր ժողովուրդ են, ինչպես նայել է այդ հարցին լեզվաբանության հնդեվրոպական դպրոցը, այլ տեղացիներ—եղբայրակից ժողովուրդ վրացիներին աղվաններին և կովկասյան մյուս ժողովուրդներին։ Անդրկովկասի ժողովուրդները հանդիսանում են խալդական կուլտուրայի և գրականության օրինական ժառանգները։ Եթե ճիշտ է հարցի այսպիսի դրվածքը, եթե Հայաստանի նախարնիկները գոյություն են ունեցել VIII-VI-րդ դարերում նախ քան մեր թվագրությունը, ապա հայ ժողովուրդը էթնիկապես կազմակերպվելուց հետո, զարգացման նոր և բարձր աստիճանում չէր կարող չյուրացնել նախնիքների կուլտուրան և չզարգացնել այն։ Նրանք, պարզ է, չէին կարող մոռանալ դար գրական-ստեղծագործական մի քանի հարյուր տարին։

Նախամեսրոպյան շրջանում հայերեն գրականության չընդունող ուսումնասիրողները աշխատում են անտեսել հայկական և խալդական կուլտուրայի միջև գոյություն ունեցող սերտ կապը։ Նրանք կրկնում են նախկին արդեն տեսակետը՝ հայերի դրսից եկած լինելու մասին և լռությամբ են անցնում խալդական կուլտուրայի՝ հայերի կողմից յուրացվելու փաստի վրա։

8. 5-րդ դարից մեզ հասել է հայերեն լեզվով օրիգինալ, թարգմանական և մեկնողական հարուստ գրականություն, որն իր քերականական մշակված ձևով, հարուստ լեքսիկոնով, ոճով և ֆիլոսոֆիայով գրականության պատմության սկզբնական շրջանի երկեր չեն կարող լինել։ Այսպիսի երկեր չի կարելի համարել ոչ Կորյունը և Եզնիկը, որոնք գրաբար լեզվի մաքրության տեսակետից բոլոր լեզվաբանների հիացմունքն են շարժում, ոչ աստվածաշնչի թարգմանությունը, որն իր ճշտության տեսակետից մյուս բոլոր թարգմանությունների շարքում

ամենալավագույններից մեկն է համարվում, և ոչ էլ 5-րդ դարի որևէ օրիգինալ կամ թարգմանական երկ: 5-րդ դարի երկերն իրենց ոճով և քերականական մշակված ձևերով այնքան են տարբերվում մյուս դարերում գրված երկերից, որ հնարավոր է իսկույն ճանաչել նրանց:

Եթե հայկական գրականության սկիզբը 5-րդ դարն է, ապա հնարավոր չէր՝

ա) որ 5-րդ դարի զանազան հայ հեղինակների աշխատությունները և թարգմանությունները միատեսակ քերականական մշակված ձև ունենային.

բ) որ տարբեր գավառների մարդիկ գրեին միևնույն բարբառով.

գ) որ թարգմանությունների ժամանակ հարկադրված չլինեին բնագրի լեզվից մեծ թվով տերմիններ փոխ առնել.

դ) որ թարգմանեին այդպիսի ճշտությամբ.

և ե) որ օրիգինալ աշխատություններն սկսվեին այդպիսի բարձր թեմատիկայով:

Նախամեսրոպյան շրջանի հայ գրականությունը ժխտողները՝ խնդրի դժվարությունից դուրս գալու համար առաջ են քաշում իրենց «բանավոր գրականության» տեսությունը: Հայ ժողովուրդը, ասում են նրանք, ունեցել է իր բանավոր գրականությունը, որը նախապատրաստել է նման բարձր գրականության ծնունդը: Մեր կարծիքով՝ նախ, ճիշտ չէ «բանավոր գրականություն» հասկացողությունը, որովհետև մի բան, որ գրի առնված չէ, նա դեռ ևս գրականություն չէ, այլ բանահյուսություն. և ապա՝ այդպիսի բանահյուսություն իրենց գրականության պատմության արշալույսին ունեցել են գրեթե բոլոր ժողովուրդները: Այդ երևույթը սպեցիֆիկ չէ հայ ժողովրդի համար: Բոլոր ժողովուրդների գրականությունն սկսվում է զարգացման ցածր աստիճանից և ապա հետզհետե ընթանում դեպի վեր, ավելի բարձր: Հայ ժողովրդի մոտ ևս տեղի է ունեցել այս զարգացումը և 5-րդ դարից մեզ հասած նման զարգացած գրականության առկայությունը ենթադրում է իրեն նախորդող գրականության գոյությունը միայն:

9. Նախամեսրոպյան հայկական գրականության հարցի համար կարևոր նշանակություն ունի մեհենական կուլտուրայի հարցը: Մեհյանները մեզ մոտ բացի կրոնական կենտրոններ լինելուց հանդիսացե՞լ են արդյոք նաև կուլտուրայի և գրականության օջախներ: Ուսումնասիրողներից ոմանք, պետք է ասել, այս հարցի կողքով են անցնում: Բայց սա կարևոր հարց է անցյալի կուլտուրան հասկանալու համար:

Հին Հայաստանի մեհենական կուլտուրայի գոյության մասին դրական և համոզեցուցիչ տեղեկություններ է հաղորդում մեզ Խորենացին: Նա պատմում է Բարդածան անունով մի պատմագրի մասին, որը Անտոնիոս վերջինի օրով (2-րդ դարում) գալիս է Հայաստանում քրիստոնեություն տարածելու, բայց այդ նրան չի հաջողվում. ճանապարհին նա մտնում է Դարանաղյաց գավառի Անի ամրոցը, որը հայ թագավորների Պանթեոնն էր, թարգմանում այնտեղ եղած մեհենական և թագավորական պատմության վերաբերող մի աշխատություն ասորերեն և իր հետ տանում: Հետագայում այդ աշխատությունն ասորերենից թարգմանվում է հունարեն և հունարենից օգտվում է Խորենացին: Խորենացին այդ մասին գրում է. «Զրուցէ մեզ զայս Բարդածան, որ յՈւռհայ: Քանզի նա յաւուրս Անտոնինոսի վերջնոյ երևեցաւ պատմագրօք... եկն նա այսր, որպէս զի աշակերտել զոք կարասցէ ի խուժ հեթանոսացս. և իբրև ոչ ընկալեալ եղև՝ եմուտ նա յամուրն յԱնի, և ընթերցեալ զմեհենական պատմութիւնն, յորում և զգործս թագաւորացն, յաւելլով իւր և որ ինչ առ ինքեան, և փոխեաց զամենայն ի լեզու ասորի. որ և ապա անտի յեղաւ ի յոյն բան: Յորում պատմէ ի մեհենիցն պաշտամանց՝ վերջին Տիգրանայ արքայի Հայոց... Յայսմ պատմութենէ առեալ մեր երկրորդեցաք քեզ ի թագաւորութենէն Արտաւազդայ մինչև յարձանն Խոսրովու» (Խորենացի, էջ 201-202):

10. Ագաթանգեղոսի հաղորդած մի տեղեկությունից երևում է, որ հեթանոսական Հայաստանում գոյություն է ունեցել ոչ միայն մեհենական գրականություն, այլ

և պաշտվել է Տիր անունով մի աստված։ Նրա մեհյանը գտնվելիս է եղել Վաղարշապատի մոտերքում, ճանապարհամերձ, Զվարթնոցի տեղը։ Այդ մեհյանի քանդումը՝ Տրդատի կողմից, Ագաթանգեղոսը նկարագրում է հետևյալ ձևով. «Եւս ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինն Անահտական դիցն, և որ յԵրազամոյն անուանեալ կայր։ Նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազահան պաշտաման Տրի դից, դպրի գիտութեան քրմաց, անուանեալ Դիւան դպրի Որմզդի, ուսմանց ճարտարութեան մեհեան. նախ ի նա ձեռն արկեալ՝ քակեալ այրեալ աւերեալ քանդեցին» (Ագաթանգեղոս, էջ 404)։ Մի ժողովուրդ, որ ունեցել է դպրության և արվեստի աստված, նա ունեցել է, անկասկած, և գրություն։

Նախամեսրոպյան հայերեն գրականությունը չընդունող գիտնականները Որմզդին տալիս են իրանական ծագում և հայտարարում, որ դա իրանական աստված է։

Մեր կարծիքով, դա հարցի ճիշտ դրվածք չէ, որովհետև նախ՝ հարցական է՝ թե ով ումից է փոխ առել. բայց մի բան ենթադրենք, որ դա անկասկած է, այնտեղից է փոխ առված. փոխ առնողները դրա կարիքն ունեցել են։ Բոլորովին երկրորդական հարց է թե զուտ ում է պատկանել, եթե տվյալ վայրում հաղորդակցությամբ չընդունվեին, նրանք զուտ թե էլ չէին բանեցնի։ Եթե Հայաստանում գրություն չունենային՝ այդ աստծու կարիքն էլ չէին զգա, նրան դրսից չէին բերի։

Ի միջի այլոց, Որմզդի այդ գրիչ աստվածը դուցե և համապատասխանում է ժողովրդի հիշողության մեջ պահված «Գրողին»։ — «Գրողն—տանում էն—տանի քեզ», «Գրողն իր դաֆթարից քո անունը ջնջի», «Գրողը քո անունը չիքերի դաֆթարում գրի» և այլն։ Ըստ երևույթին, Գրող աստծու վրա նայվել է, որպես ծնվողներին ցուցակագրող և մահացողներին էլ ջնջող աստծու։

11. Հայաստանի մեհյաններում ժամապաշտություն էին կատարում մեծ թվով քրմեր։ Այս քրմերը ուսյալներ էին և, անկասկած, խոսում էին հայերեն և ծիսակատարություն էին կատարում հայերեն լեզվով։ Նրանք պիտի որ ծիսակատարության մատյաններ ունենային և չէին կարող ամեն ինչ անգիր ձևով իմանալ։

12. Ուշադրության արժանի է, որ Կարակալա կայսեր (III դար) ժամանակակից Փիլոստրատոս անունով մի հույն հեղինակ իր «Վարք Ապոլլոնեայ» աշխատության մեջ խոսելով Պամփյուլիայում բռնված հովազի մասին, վկայում է հայերեն գրության գոյության մասին։ Անհրաժեշտ ենք համարում այդ հատվածը մեջ բերել՝ վերցնելով Իս. Հարությունյանի թարգմանությունից. «Ինչ որ մեր Տավրոսի մասին խոսում են —և որ երկար ժամանակ ոչ ոք չէր հավատում—թե նա Հայաստանի սահմաններից էլ անցնում է, հաստատում են այն հովազները, որ ինչպես գիտեմ, բռնվում են համեմունքով առատ Պամփյուլիայում, որովհետև այս կենդանիները սիրում են անուշ բուրմունք՝ ուստի գալիս են գալիս Հայաստանից և զննում են այն կողմերը, որտեղից քամին բերում է այդ անուշ հոտը։ Պատմում են նույնպես, որ մի անգամ Պամփյուլիայում բռնվել է մի հովազ, որի ոսկյա մանյակի վրա գրված էր հայերեն տառերով (ἐπέγραπτο Ἀρμενίοις) հետևյալը. «Արշակ թագավոր Նյուսեայ աստծուն» ...Արշակն այն ժամանակ հայոց թագավորն էր, և յուր բռնած հովազը, այդ կենդանու մեծության պատճառով նվիրել էր Դիոնիսիոսին...» (Տես Ի. Հարությունյանի «Հայոց գիրը» աշխատությունը, էջ 652 Հմմ. C. L. Kayser, հատ. I, էջ 44)։

Նախամեսրոպյան հայերեն գրությունը ժխտող գիտնականները Փիլոստրատոսի այս տեղեկությունը վրա կասկածում են, որովհետև նրանց կարծիքով «Արշակ անունով հայ թագավոր չի եղել» (!), իսկ մակագրությունը, հավանական է, պահլավերեն է եղել։ Այսպես, պրոֆ. Հ. Աճառյանը հետևյալն է գրում. «Արշակ՝ եթէ իրօք պատմութիւնը ճշմարիտ է, աւելի պարթև թագաւորի մ' անունն ըլլալու է, և այն մակագրութիւնն ալ աւելի պահլաւերէն քան թէ հայերէն» (Հ. Աճառեան, Հայոց գրերը։ Տես «Հանդէս ամսօրեայ» 1911 թ., էջ 235)։

Նման բացատրություն տվող գիտնականների պատճառաբանությունը, մեր կարծիքով, հիմնավոր չէ, որովհետև նախ՝ հիմք չունենք կասկածելու այս տեղեկության ճշտության վրա, և, ապա՝ ենթադրենք Փիլիստրատոսը շփոթել է և պահլավերենը հայերեն է կարծել, բայց այդ ավելի է հաստատում նրա ժամանակ հայերեն գրի գոյությունը: Նրա ժամանակ, ուրեմն, հայերեն գիրն ու գրականությունն այնքան պիտի հանրածանոթ փաստ եղած լիներ, որ պահլավերենն էլ շփոթեին հայերենի հետ:

13. Ալեքսանդր Մամեայ կայսեր ժամանակակից մի հույն հեղինակ, Հիպպոլիտ անունով, Մամեայի թագավորության 13-րդ տարում (մեր թվագր. 234-ին) գրել է մի ժամանակագրություն, ուր թվում է իր ժամանակի այն ժողովուրդներին, որոնք ունեն գրություն: Գրություն ունեցող ժողովուրդների շարքում, ի միջի այլոց, նա հիշում է նաև հայերին: Նա թվում է գրություն ունեցող հետևյալ ժողովուրդներին՝ իբերացիներին, լատինացիներին (որոնց գիրը հռոմայեցիներն են գործ ածում), սպանացիներին, հույներին, մարացիներին և հայերին («Οἱ δὲ ἐπιστάμενοι αὐτῶν γράμματά εἰσιν: Ἴβηρες, Λατῖνοι, οἷς χρῶνται οἱ Ρωμαῖοι, Σπάνοι, Ἕλληνες, Μῆδοι, Ἀρμένιοι». Հիպպոլիտի աշխատության մեջ եղած այս տեղեկությունը, այդ գրքի Հայաստանում չգտնելու պատճառով, մենք վերցրել ենք պրոֆ. Շանիձեյի և դոց. Աբուլաձեյի „Новооткрытый алфавит кавказских албанцев"(Hippolytus Werke 4 Bd. Die Chronik). աշխատությունից: Հիպպոլիտից, իր ժամանակագրության մեջ՝ օգտվել է Շիրակացին, ավելացնելով այս ժողովուրդների անունների վրա նաև ազվաններին. «Ի սոցանէ, (այսինքն իր թված ժողովուրդներից Ա.Ա.) որք գիտեն գրութիւն՝ իբրայեցիք, լատինացիք, որով և հոռոմք վարին, սպանացիք, յոյնք, մարք, Հայք, աղուանք» (տես «Անանուն ժամանակագրութիւն VII դարու»):

Հիպպոլիտի ժամանակագրության վավերականության մասին կասկած լինել չի կարող: Գտնված է հեղինակի կիսանդրին, որի վրա գրված նրա աշխատությունների ցուցակում հիշված է նաև «Ժամանակագրութիւն»-ը: Կասկած չի կարող լինել նաև «Ժամանակագրության» թվականի վերաբերյալ—նա գրված է 234-ին (մեր թվագրության): Եթե 3-րդ դարի հեղինակը մեզ այսպիսի տեղեկություն է տալիս հայկական գրի գոյության մասին, ապա ինչ հիմք ունենք մենք կասկածելու դրա վրա:

14. 7-րդ դարի հայ մատենագիր Թեոդորոս Քռթենավորը՝ Մայրագոմեցու դեմ գրած իր մի ճառում մեղադրում է նրան, որ նա և նրա հետևողները թշնամաբար են տրամադրված դեպի ավետարանի առաջին կամ հնագույն թարգմանությունը, որը կատարված է Լուսավորչի ձեռքով. «Երդ կաճառք բանիցն յուզեալ՝ դարձեալ վիճաբանեն: Եւ ակն նորագրեալ աւետարանականն սահիցն պատմութիւնք անմիաբան ի միմեանց գտան. յորոց զմին ընտրեալ զովեցուցէք, և զմիւսն ներքեալ արտաքսեցուք ի սրբում կոչարանէ: Քանզի բազմերգելին Գրիգոր առաքելաքարոզ նահատակն Քրիստոսի զամենայն աւետարանական պիտոյութիւնն նորագրեաց՝ զոր ինչ յաղագս աստծոյ բանի անօրինական կիրառութիւն պիտանէր...» Ճառ «Երանելւոյն Թէոդորոսի ընդդեմ Մայրագոմեցւոյն» տես «Յովհ. Իմաստասիրի Աւձնեցւոյ...Стр. 3) Մատենագրութիւնք»-ին կից 1833 թ. Վենետիկում հրատարակված ճառերը, էջ 154):

Կարող է կասկածելի լինել Լուսավորչի ձեռքով կատարված թարգմանության փաստը, բայց որ Թէոդորոսի այս տեղեկությունը հիմք է տալիս կարծել V դարից առաջ կատարված ավետարանի հնագույն թարգմանություն, որը և վերագրվել է Լուսավորչին,—դրա մասին չի կարելի կասկածել:

15. 4-րդ դարից հայերեն մեզ հասել են երեք հեղինակների պատմությունները —Ագաթանգեղոսի, Փավստոսի և Զենոբ Գլակի: Դրանցից առաջինը, Ագաթանգեղոսը, իրեն համարում է Տրդատի քարտուղար, Փավստոսը՝ Ներսես կաթողիկոսի ժամանակակից հեղինակ է, իսկ Զենոբ Գլակը իրեն համարում է Լուսավորչին ժամանակակից մարդ և ասանակից հեթանոսության դեմ մղվող կռիվներին: Այդ հեղինակների աշ-

խատությունները, հատկապես Ագաթանգեղոսի և Զենոբ Գլակի աշխատությունները, ինչպես պարզված է, խմբագրված են ուշ դարերում։ Լուրջ ուսումնասիրողներից, սակայն, ոչ ոք չի համարել Ագաթանգեղոսի և Փավստոսի աշխատությունները կեղծիք,— այդպիսի կասկած եղել է միայն Զենոբ Գլակի նկատմամբ։ Փավստոսին և Ագաթանգեղոսին՝ որպես իրենից առաջ գոյություն ունեցող մատենագրեր, հիշում է Ղազար Փարպեցին։ Բանասիրության մեջ չի հաստատվում նաև Ագաթանգեղոսի կամ Փավստոսի հունարենից թարգմանված լինելը։ Ակադեմիկոս Մառը ցույց է տվել, որ հունարենն է թարգմանված հայերենից։ Եթե IV դարում գրվել են այդպիսի լուրջ պատմական երկեր, ուրեմն եղել է և գրություն։

Նախամեսրոպյան հայ գրականությունը ժխտողներն աշխատում են շեշտ դնել այդ երկերի խմբագրված լինելու փաստի վրա։ Բայց դա հարցի էությունը չի փոխում —մեզ հասածը խմբագրված է, բայց նախնականը գոյություն ունե՞ր, նրանք 4-րդ դարի հեղինակնե՞ր են, այդ է էականը։

16. Ղազար Փարպեցին՝ դատապարտելով եկեղեցիներում ասորերեն պաշտամունք կատարելը՝ Մեսրոպի գրերի ստեղծումից առաջ, խոսում է հայերեն գրի գոյություն ունենալու մասին. «...մանաւանդ թէ զսն նանմագիրս հայերէն լեզուայս, (ընդգծումը մերն է) որ հնար է ինքեան ձայնիւ և ոչ մուրացածոյ բարբառով շահել զօգուտ արանց և կանանց սո հասարակ» (Ղազար Փարպեցի, էջ 14)։

17. Նախամեսրոպյան հայ գրերն ու գրականությանը վիճակված չէր խաղաղ ճանապարհ ընթանալ։ Նրա զարգացման համար ստեղծվում են աննպաստ քաղաքական պայմաններ—Երբ որոշ հայ թագավորներ վասալական կախվածության մեջ են ընկնում Հռոմից, հելլենական կուլտուրան սկսում է առանց արգելքի մուտք գործել հայ թագավորների արքունիքը և հայկական գիրն ու գրականությունն աշխատում է դուրս մղել այնտեղից։ Հայ թագավորներից ոմանք հունարեն են կտրում իրենց դրամները (տես Sammlung Petrovicz, Arsaciden-Münzen, Wien S. 1904, 183-191, Tafel xxv)։ Հայ որոշ թագավորներ հունարեն են գրում իրենց արձանագրությունները (Տրդատի հունարեն արձանագրությունը Բաշ-Ապարանում, Արմավիրի արձանագրությունը Սելևկյան շրջանից, Սեբեոսի տեղեկությունը «...դրոշմեալ ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց և Պարթևաց յունարէն դպրութեամբ...» և այլն), բայց հայկական տեղական գիրն ու գրականությունը շարունակում է զարգանալ ժողովրդի մոտ և մեհյաններում։

Նախամեսրոպյան հայկական գրի ու գրականության գոյությունը ժխտողները՝ հայ որոշ թագավորների հունարենով գրված դրամներն ու արձանագրությունները փաստ դարձրած՝ պնդում են հայերեն գրի ու գրականության բացակայությունը։—Ինչու ստում են նրանք, մեզ հասել են խալդական արձանագրությունները, իսկ հեթանոսական հայկական գրից ու գրականությունից մի օղ անգամ չի մնացել։ Մենք ուզում ենք հարց տալ նրանց—ինչու մեզ չի հասել ավելի ուշ շրջանի-V-VIII դ. թվական ունեցող հայերեն ոչ մի ձեռագիր, ինչու մեզ չի հասել ավանդական գրականությունից ոչ մի տող, որի սկիզբը V դարից է։ Ամբողջ քաղաքներ են կորել պատմության մեջ և այժմ աշխատում են գտնել նրանց տեղերը, հարուստ կուլտուրայով ժողովուրդներ են դուրս եկել պատմության բեմից՝ առանց նյութական կուլտուրայի հետք թողնելու. ինչ իրավունք ունենք մենք այդքան խստապահանջ լինելու մեզանից 1500 տարի առաջ գործ ածվող գրության նկատմամբ։ Բացի այս, նրանք մոռանում են, որ հայ թագավորների դրամները հունարեն են կտրվել, որովհետև նրանք շրջանառության մեջ էին դրվում Հայաստանից դուրս ևս։ Իսկ մեհյանների վիմագիր գրությունները մեծ մասամբ մեհյանների վրա պիտի լինեին, իսկ կանգուն մեհյանները մեզ չեն հասել։

18. Նախնական հայկական գրականությանը սպանիչ հարված հասցրեց քրիստոնեությունը։ Անհրաժեշտ է նշել, որ քրիստոնեությունը Հայաստանում տարածվեց ոչ թե խաղաղ ճանապարհով, այլ սրով և հրով։ Տրդատը, ըստ պատմիչների հաղորդած տեղեկությունների, իր զորքի գլուխն անցած քանդում, ավերում էր հեթանոսական մեհ-

ժանները և նրանց տեղը քրիստոնեական վանքեր ու եկեղեցիներ շինում: Քանդում, ոչնչացնում էին ոչ միայն մեհյանները, այլ և նրանց առնչված ողջ կուլտուրան:

Քանդարար այս աշխատանքին հետևեց ասորական և հունական քրիստոնյա քարոզիչների մուտքը Հայաստան, որոնք իրենց հետ բերում էին ոչ միայն քրիստոնեությունը, այլ և իրենց լեզուն ու գրությունը:

Հեթանոսության դեմ կռվողի հալածանք սկսվեց հատկապես քրիստոնեությունը Հայաստանում պաշտոնական կրոն ճանաչվելուց հետո:

Քրիստոնեության Հայաստանում տարածվելուն և ուժեղանալուն զուգընթաց, սկսեց ուժեղանալ հունական և ասորական ազդեցությունը, Այդ ազդեցությունը ժամանակի ընթացքում այնքան ուժեղացավ, որ սկսեց սպառնալ տեղական, ազգային կուլտուրայի գոյությանը: Այս ազդեցության դեմ կռվելու համար էր, որ անհրաժեշտ եղավ առաջ քաշել նորից սեփական գիր ունենալու հարցը և հնարավոր դարձավ անցյալի հարուստ գրականության վերականգնումը նոր տեսանկյունով: Այդ գործն իր ուսերի վրա վերցրեց Մաշտոցը: Մաշտոցի մեծությունը, մեր կարծիքով, ոչ թե նրանում է, որ նա հունարեն այբուբենի վրա ձևեց հայերեն նշանագրերը, այլ որ նա անցյալի գրականության հարուստ փորձի վրա հենք դրեց մեր ներկա գրականությանը՝ կռվելով տեղական կուլտուրայի գոյությունն սպառնացող հունական և ասորական ազդեցությունների դեմ:

Համարձակ կարելի է ասել, որ Հայաստանում, 5-րդ դարից շատ առաջ, գոյություն է ունեցել հայերեն գրականություն: Այդ գրականությունը մեհյանների ավերակների տակ թաղվեց—նա քրիստոնեության առաջին մեծ զոհերից մեկն է: